Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 5 ՄԱՐՏ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԴ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։






# ՁԱՅՆ ՏԱՆՔ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԵՎ ԱՆՊԱՐՏԻԱԿԱՆՆԵՐԻ ԲԼՈԿԻ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐԻ ՕԳՏԻՆ

Ուրախ ու երջանիկ օրեր են ապրում մեր հզոր Հայրենիքի աշխատավորները։ Նրանք մեծ սիրով ու բուռն խանդավառությամբ նախապատրաստվում են ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններին, որպեսզի մար-տի 16-ին իրենց ձայնը տան կոմունիստ-ների և անպարտիականների անխախտ բլոկի թեկնածուների օգտին։ Նախընտրա-կան այս օրերին Սովետական Միության բազմամիլիոն ընտրողների հետ միասին մեր ռեսպուբլիկայի ընտրողները նույնպես աշխատանքային նոր հաջողություններով են նշանավորում ընտրությունները։ Ռես-պուբլիկայի արդյունաբերական ձեռնարկու-թյուններում, շինարարություններում, կոլ-տնտեսություններում, սովխոզներում և մե-քենա-տրակտորային կայաններում լայնո-րեն ծավալվում է համաժողովրդական սո-





ցիալիստական մրցումը։ Ամենուրեք աճում է ընտրողների քաղաքական և աշխատանքային ակտիվությունը։

Արդեն ընտրական բոլոր օկրուգներում ավարտվել են դեպուտատության թեկնածուների գրանցումները։ Ագիտատորները պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ ընտրողների լայն շրջանում ագիտացիա են մղում դեպուտատության թեկնածուների օգտին։

Երևանի Ստալինյան № 302 ընտրական օկրուգում ՍՍՌՄ Գերագույն Սովետի Ազգությունների Սովետի դեպուտատության թեկնածու է գրանցված հայ ժողովրդի պանծալի զավակ, ՍՄԿՊ Կենտկոմի Նախագահության անդամ, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի տեղակալ ընկ. **Անաստաս Իվանովիչ Միկոյանը**։

Մեր սոցիալիստական Հայրենիքին մեծ ծառայություններ է մատուցել ընկեր Միկոյանը և ժողովուրդը բարձր է գնահատում նրա ծառայությունները՝ ամեն անգամ ընտրելով նրան ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ։

Երևանի № 717 ընտրական օկրուգում ՍՍՌՄ Գերագույն Սովետի Միության Սովետի դեպուտատության թեկնածու է գրանց-



ված ՍՄԿՊ Կենտկոմի անդամ, ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. **Սուրեն Հակոբի Թովմասյանը**։ Ընկ. Թովմասյանը աճել ու դաստիարակվել է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի շարքերում և դարձել նրա ակտիվ գործիչներից մեկը։ Մեր երկրի հզորության և ժողովրդի բարօրության համար մղվող պայքարում նա ուժ ու եռանդ չի խնայում։

Եղեգնաձորի № 318 ընտրական օկրուգում ՍՍՌՄ Գերագույն Սովետի Ազգությունների Սովետի դեպուտատության թեկնածու է գրանցված ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահի տեղակալ, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ ընկ. **Շմավոն Մինասի Առուշանյանը**։ Ընկ. Առուշանյանը պարտիական և սովետական աշխատանքի հարուստ կենսափորձ ունի։ Լավ աշխատանքի համար ընտրողները սիրում և հարգում են նրան։

Սևանի № 722 ընտրական օկրուգում ՍՍՌՄ Գերագույն Սովետի Միության Սովետի դեպուտատության թեկնածու է գրանցված Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի Նախագահ ընկ. **Անտոն Երվանդի Քոչինյանը**։ Ընկ. Քոչինյանը երկար տարիներ

կոմերիտական, պարտիական և սովետական ղեկավար աշխատանք է կատարել մեր ռեսպուբլիկայում։ Լավ աշխատանքի համար բազմիցս արժանացել է կառավարական պարգևների։

Կիրովականի գյուղական № 312 ընտրական օկրուգում ՍՍՌՄ Գերագույն Սովետի Ազգությունների Սովետի դեպուտատության թեկնածու է գրանցված ՀԿՊ Կենտկոմի երկրորդ քարտուղար ընկ. Հրաչ Խաչատուրի Մարգարյանը։ Ընկ. Մարգարյանը երկար տարիներ աշխատելով պարտիական ապարատում, իր բոլոր ուժերն ու եռանդը նվիրաբերել և նվիրաբերում է պարտիայի դիրեկտիվներն անշեղորեն կատարելու գործին։

Գորիսի № 324 ընտրական օկրուգում ՍՍՌՄ Գերագույն Սովետի Ազգությունների Սովետի դեպուտատության թեկնածու է գրանցված ՀԿՊ Կենտկոմի քարտուղար ընկ. Յակով Նիկիտի Զարոբյանը։ Ընկ. Զարոբյանը լավ գիտի մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունը, հատկապես արդյունաբերությունը։ Բազմակողմանի գործիմացության, թերությունների նկատմամբ անհաշտ վերաբերմունքի համար ընտրողները



բարձր են գնահատում ընկ. Զարոբյանի աշխատանքը։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Միության Սովետի դեպուտատության թեկնածուներ են գրանցված.

Կիրովականի № 719 ընտրական օկրուգում՝ Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ, բազմավաստակ գիտնական ընկ. Վիկտոր Համազասպի Համբարձումյանը.

Էջմիածնի № 721 ընտրական օկրուգում՝ Շահումյանի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսության վարչության նախագահ ընկ. Արտաշես Մարտիրոսի Մեժլումյանը.

Լենինականի № 720 ընտրական օկրուգում՝ մանվածքային ֆաբրիկայի բանվորուհի Աստղիկ Սարգսի Առաքելյանը.

Կոտայքի № 718 ընտրական օկրուգում՝ ՍՍՌՄ ժողովրդական արտիստուհի Տաթևիկ Տիգրանի Սազանդարյանը.

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Ազգությունների Սովետի դեպուտատության թեկնածուներ են գրանցված.

Երևանի Լենինյան № 301 ընտրական օկրուգում՝ Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի խառատ ընկ. Վազգեն Ռուբենի Ղազարյանը.

Երևանի Սպանդարյանի № 303 ընտրական օկրուգում՝ ՀԿՊ Երևանի քաղաքային կոմի-
տեի առաջին քարտուղար ընկ. Հովհաննես
Մնացականի Բաղդասարյանը.

Երևանի Կիրովյան № 304 ընտրական օկ-
րուգում՝ կուլտուրայի աշխատողների արհ-
միության ռեսպուբլիկական կոմիտեի նա-
խագահ Մարգարիտա Խաչատուրի Դավթյա-
նը.

Երևանի 26 կոմիսարների անվան № 305
ընտրական օկրուգում՝ ժամացույցի գործա-
րանի բանվորուհի Ռոզա Թադևոսի Տեր-
Աստվածատրյանը.

Աշտարակի № 306 ընտրական օկրուգում՝
գրող Ստեփան Եղիայի Զորյանը.

Ալավերդու № 307 ընտրական օկրուգում՝
պղնձաքիմիական կոմբինատի ձուլման ցե-
խի ավագ վարպետ Հարություն Հովհաննեսի
Ծավյանը.

Ամասիայի № 308 ընտրական օկրուգում՝
ՍՍՌՄ սահմանապահ զորամասից մեկի հրա-
մանատարական աշխատող Պյոտր Վասիլևիչ
Պիսկունովը.

Լենինականի № 309 ընտրական օկրուգում՝
ՀԿՊ Լենինականի քաղաքային կոմիտեի
առաջին քարտուղար Անդրանիկ Իսրայելի
Սավոյանը.



Ախուրյանի № 310 ընտրական օկրուգում՝
Ղարիբջանյան գյուղի կոլտնտեսության օղա-
կավարուհի Լուսանուշ Վարդանի Մունչույ-
յանը.

Կիրովականի № 311 ընտրական օկրուգում՝
Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբի-
նատի դիրեկտոր Սարգիս Խաչատուրի Թևոս-
յանը.

Կրասնոսելսկի № 313 ընտրական օկրու-
գում՝ Երևանի Պետական համալսարանի ռեկ-
տոր Գագիկ Ստեփանի Դավթյանը.

Ախտայի № 314 ընտրական օկրուգում՝
Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի նախագահ
Սուրեն Համբարձումի Մովսիսյանը.

Նոր Բայազետի № 315 ընտրական օկրու-
գում՝ տրակտորային բրիգադայի բրիգադիր
Գևորգ Սմբատի Սարգսյանը.

Մարտունու № 316 ընտրական օկրուգում
Բասարգեչարի շրջանի Կարակոյուն գյուղի
կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերմա-
յի վարիչ Իման Գյուլալի օղլի Հուսեյնովը.

Արտաշատի № 317 ընտրական օկրուգում՝
Քաղցրաշեն գյուղի կոլտնտեսության օղակա-
վարուհի Նոյեմզար Մանուկի Եղիազարյանը.

Ստեփանավանի № 319 ընտրական օկրու-
գում՝ ուսուցչուհի Հերսիկ Մուշեղի Հակոբ-
յանը.

Արթիկի № 320 ընտրական օկրուգում՝ Լենինականի դեպոյի ավագ մեքենավար Սուրեն Խաչատուրի Մատնիշյանը.

Իջևանի № 321 ընտրական օկրուգում՝ Շամշադինի շրջանի Զորաքան գյուղի կոլտնտեսուհի Վարսենիկ Սողոմոնի Ապերյանը.

Շահումյանի № 322 ընտրական օկրուգում՝ Էջմիածնի շրջանի Ներքին Ջեյվա գյուղի կոլտնտեսության բրիգադիր Մարիամ Նահապետի Եղիազարյանը.

Հոկտեմբերյանի № 323 ընտրական օկրուգում՝ Ճապոնիայում ՍՍՌՄ արտակարգ և լիազոր դեսպան Իվան Ֆեոդորի Թևոսյանը.

Ղափանի № 325 ընտրական օկրուգում՝ Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատի հորատող հաստոցի մեքենավար Վազգեն Տիգրանի Ավետիսյանը.

Բոլոր ընտրողները, մեր ռեսպուբլիկայի աշխատավորները իրավամբ հպարտանում են իրենց կողմից առաջադրված ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության վերը հիշված թեկնածուներով։ Նրանք սովետական ժողովրդի արժանավոր զավակներն ու դուստրերն են, որոնք ամենայն հաստատակամությամբ պայքարում են մեր երկրի ծաղկման ու բարգավաճման համար, ՍՍՌՄ գլխավոր տնտեսական խնդրի հաջող լուծման համար։



Մոտ մեկ ամիս առաջ ի լուր բոլոր ընտրողների Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն հայտարարեց, որ Կոմունիստական պարտիան, ինչպես և անցյալ ընտրական կամպանիաներում, այնպես էլ առաջիկա ընտրություններում հանդես է գալիս անկուսակցականների հետ միասնական բլոկով, սերտ դաշինքով։ Այդ բլոկն արտահայտում է պարտիայի և ժողովրդի անխախտ միասնությունը, որը սովետական հասարակության զարգացման հզոր շարժիչ ուժն է կոմունիզմի ճանապարհին։

Ինքնին հասկանալի է, թե նախընտրական կամպանիայի այս օրերին ինչպիսի կարևորագույն ու առաջնահերթ խնդիր ունեն կատարելու մեր ագիտատորները։ Ամենից առաջ հարկավոր է սիստեմատիկաբար, հետաքրքիր ու բովանդակալից զրույցներ կազմակերպել ընտրողների հետ դեպուտատության թեկնածուների մասին։ Ամենօրյա ագիտացիոն զրույցների միջոցով ընտրողներին պարզաբանել դեպուտատության թեկնածուների այն հիանալի ծառայությունները, որ նրանք մատուցել են ժողովրդին, պրոպագանդել այն ազնիվ ու անձնուրաց աշխատանքը, որ նրանք կատարել և այժմ էլ կա-

տարում են ու դեռ կկատարեն առաջիկայում։

Դեպուտատության թեկնածուների օգտին մղվող ագիտացիան հարկավոր է սերտորեն կապել պարտիայի և կառավարության կողմից աշխատավորների առջև դրված գործնական խնդիրները առաջիկայում անթերի կատարելու հետ։

Դեպուտատության թեկնածուների օգտին ագիտացիա կազմակերպելու լավագույն ձևերից մեկը՝ ընտրողների հետ հանդիպումներ կազմակերպելն է, որ այժմ հաջողությամբ կատարում են վստահելի անձինք։ Մեր ագիտատորները վստահելի անձերի առաջին օգնականները պետք է լինեն և ամեն կերպ աջակցեն նրանց, ընտրողների հետ դեպուտատության թեկնածուների հանդիպումներն ավելի արդյունավետ, ավելի գործարար մթնոլորտում անցկացնելու համար։

Մեր ռեսպուբլիկայի բոլոր ընտրողները ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններին են գնում սերտորեն համախմբված հարազատ Կոմունիստական պարտիայի, նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը։ Նրանք սրբությամբ կկատարեն Կոմունիստական պարտիայի կոչը միահամուռ կերպով ձայն կտան կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին։

---

# ԱԳԻՏԱՏՈՐԸ ԳՅՈՒՂԻ ՎԵՐԵԼՔԻ ՄԱՍԻՆ

(Ագիտատոր ՄԱՆԻԿ ՈՍԿԱՆՅԱՆԻ պատմածը)

Ախուրյանի շրջանի Ախուրյան գյուղի կոլտնտեսության ագիտատոր Մանիկ Ոսկանյանը ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստությունը սկսելու օրվանից մի շարք զրույցներ է ունեցել ընտրողների հետ։ Մասսայականացնելով ընտրությունների կանոնադրությունը, ՍՍՌՄ Կոնստիտուցիան, նա յուրաքանչյուր անգամ իր զրույցի նյութը կապում է իրենց կոլտնտեսության առօրյա խնդիրների, նրա հեռանկարների, կոլտնտեսականների աշխատանքի հետ։

Իր հերթական զրույցը ագիտատոր Մանիկ Ոսկանյանը նվիրեց «Մեր գյուղը վերելքի ճանապարհին» թեմային։ Այդ զրույցին նա նախապատրաստվեց շատ խնամքով, նախօրոք խոսեց առանձին կոլտնտեսականների հետ, անհրաժեշտ տեղեկություններ վերցրեց

կոլտնտեսության վարչությունից և պարտկազմակերպությունից։ Զրույցին նա ներկա դարձրեց նաև կոլտնտեսության նախագահին, պարտիական կազմակերպության քարտուղարին, զոոտեխնիկին, անասնաբուժին, ագրոնոմին և խնդրեց նրանց խոսել կոլտնտեսության հեռանկարների մասին։ Սկսվում է պարապմունքը։

— ՍՍՌՄ Գերագույն Սովետի վերջին ընտրություններից,— ասում է ագիտատորը,— անցել է չորս տարի։ Պարտիական կազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը կենսագործելով պարտիայի և կառավարության որոշումները, կոլտնտեսությունում զգալիորեն ավելացավ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, բարեկարգվեց գյուղը, ավելացավ կոլտնտեսականների եկամուտները։

Ագիտատորը իր զրույցը պարզ դարձնելու համար, մի քանի խոսքով նկարագրում է գյուղի անցած ուղին։ Մեր գյուղը, մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատվելը, գտնվում էր խավարի ու տգիտության մեջ։ Գյուղացին տնքում էր կարիքի ու կամայականության լծի տակ։ Իսկ այսօր, տեսեք թե ի՞նչ է դարձել նախկին Դուզքյանդը, մեր Ախուրյանը։



Առաջին բարիքը, որ սովետական իշխանության տարիներին ստացավ մեր գյուղը— դա Արփաչայի կենարար ջուրն էր, որ բարձրացավ Կապսի ձորերից և Շիրկանալի միջով հոսեց մեր դաշտերը։ Դարերով պապակ հողը ոռոգելի դարձավ։ Ներկայումս Ախուրյանը լրիվին էլեկտրիֆիկացման և ռադիոֆիկացման է ենթարկվել։ Ավելի քան 170 կոլտնտեսականներ ձեռք են բերել տարբեր մարկայի ռադիոընդունիչներ, մեծ մասամբ վերջին մի քանի տարիների ընթացքում։

Մեր կոլտնտեսության դաշտերում ներկայումս աշխատում են երկու տրակտորային բրիգադա, որոնց օգնությամբ կատարվում է 8 հազար հեկտար պայմանագրային վար։ Գյուղատնտեսական աշխատանքների 95 տոկոսը կատարվում է մեխանիզացիայի միջոցով, հատկապես վարը, ցանքը և բերքահավաքը։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի անցած ընտրություններից մինչև այս ընտրությունները զգալի չափով փոխվել է մեր գյուղի կուլտուրական տեսքը։ Գյուղում գործում է ստացիոնար հիվանդանոց։ Գյուղի կուլտուրական օջախն է դարձել ակումբը, որն ունի իր ստացիոնար կինոն։ Ակումբում հաճախակի ելույթներ են ունենում Լենինականի պետա-

կան թատրոնի կոլեկտիվը և մեր գյուղի ինքնագործ խմբակները։ Ակումբին կից գրադարանն ունի 15 հազար կտոր գիրք։ Գյուղում կա նաև փոստ-հեռագրատուն, մանկապարտեզ և մանկամսուր։

Միայն 1954—1957 թվականների ընթացքում կոլտնտեսականները կառուցել են 205 նոր բնակարան։

Ախուրյանի կոլտնտեսականներն ու մեխանիզատորները զինված ՍՄԿԿ 20-րդ համագումարի որոշումներով, եռանդուն կերպով աշխատում են հացահատիկի արտադրությունն ավելացնելու համար։ 1957 թվականին կոլտնտեսությունը 1300 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացավ 12,61 ցենտներ միջին բերք, անցած տարվա 11,02 ցենտների դիմաց։ Հացահատիկի արտադրության ավելացման շնորհիվ հնարավոր դարձավ ավելի շատ բերք բաշխել աշխօրերին։ 1956 թվականի համեմատությամբ անցած տարի աշխօրին բաշխվեց մոտ մեկ կիլոգրամ ավելի հացահատիկ։ Այս հաջողությունները ձեռք են բերվել կոլտնտեսականների, մեխանիզատորների, մասնագետների համառ ու քրտնաջան աշխատանքով, ագրոտեխնիկական մի շարք միջոցառումների իրականացման շնորհիվ։



Կոլտնտեսությունը սկսել է լուրջ ուշադրություն դարձնել աշնանացանի ցանքատարածությունների ընդարձակման և նրա մշակման վրա, քանի որ մեզ մոտ նույնիսկ անբարենպաստ տարիներին աշնանացանից ավելի բարձր բերք է ստացվում, քան գարնանացանից։

Անցած տարի լավ սկսեցինք գարնանացանը։ Մեծ աշխատանք կատարվեց ցանքերի մշակման ուղղությամբ, իսկ բերքահավաքն ավարտվեց սեղմ ժամկետում, որի շնորհիվ էլ նվազագույնի հասավ բերքի կորուստը։ Բերքատվության բարձրացմանը նպաստեց նաև սերմերի զտումն ու ախտահանումը, դաշտերում կազմակերպվեց պայքար վնասատուների դեմ, ձեռք բերվեց բերքատու լավագույն սերմացու։

Պարտիական կազմակերպության և կոլտնտեսության վարչության նախաձեռնությամբ այժմ եռանդուն աշխատանք է տարվում 1958 թվականի գարնանացանն արագ և բարձրորակ կատարելու համար։ Այդ նպատակի համար արդեն զտված և կոնդիցիայի են հասցված սերմացուները։ Այս տարի դաշտ է տեղափոխվել ավելի շատ տեղական պա-

բարտանյութ, կուտակվել է պլանով նախատեսված հանքային պարարտանյութեր։

Պարտիայի և կառավարության միջոցառումների և մեր կոլտնտեսականների անձնվեր աշխատանքի շնորհիվ, վերելքի ուղին է բռնել հանրային անասնաբուծությունը։ Վերջին երկու տարվա ընթացքում նշանակալից աշխատանք է կատարվել անասնաբուծության կերի բազան ամրապնդելու ուղղությամբ։ 1955 թվականի համեմատությամբ, 1957 թվականին կոլտնտեսությունում երկու անգամ ավելացել է խոտի կուտակումը։ Եգիպտացորենի մշակությունն արմատավորելու շնորհիվ 1957 թվականին կոլտնտեսությունում պատրաստվեց ավելի քան 1300 տոննա սիլոս, 1955 թվականի 600 տոննայի դիմաց։ Կերի բազան ուժեղացնելու և անասունների խնամքը բարելավելու հետևանքով զգալիորեն ավելացավ կաթի արտադրությունը։ Յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը 1956 թվականի 1300 կիլոգրամի փոխարեն 1957 թվականին հասավ 1452 կիլոգրամի։ Արտադրանքի բարձր աճ տվեց հատկապես ոչխարաբուծությունը։ 1957 թվականին յուրաքանչյուր ոչխարից ստացվեց 3 կիլոգրամ բուրդ։

Անասնաբուծության զարգացման համար



կարևոր նշանակություն ունի անասնապահական օբյեկտների շինարարությունը։ Այս ուղղությամբ վերջին 4 տարում զգալի աշխատանք է կատարվել։ 1955 թվականին կառուցվեց տիպային մեկ կովանոց և մեկ տիպային ոչխարանոց՝ 500 գլխի համար, 1956 թվականին կառուցվեց երկրորդ տիպային կովանոցը՝ 135 կովի համար և մեկ տիպային խոզանոց։ 1957 թվականին ավարտվեց նոր կովանոցի քարային աշխատանքը և կառուցվեց սիլոսի երկու աշտարակ։ Անասնապահական օբյեկտները մեխանիզացիայի են ենթարկված։ Կոլտնտեսության եկամտաբեր ճյուղերից է համարվում խոզաբուծությունը։ 1957 թվականին պետությանը հանձնված մսի 35 տոկոսը կազմել է խոզի միսը։ Այժմ ֆերմայում հաշվվում է 70-ից ավելի մայր խոզ։

Կոլտնտեսության ունեցվածքի տարեցտարի աճը մեծ չափով նպաստում է կոլտնտեսականների եկամուտների բարձրացմանը։ Ես ձեզ կբերեմ միայն մի օրինակ։ Վերցնենք մեր կոլտնտեսական Գարեգին Արշակյանին. նա ունի 11 երեխա, անցյալ տարի կառուցեց 5 սենյակից բաղկացած բնակարան, ունի ռադիոընդունիչ։ Վաստակել է 1700 աշխօր, որի դիմաց ստացել է 7 տոննա հացահատիկ, մոտ 12 հազար ռուբլի դրամ, 50 կիլոգրամից ավե-





լի յուղ, 80 կիլոգրամ պանիր, երկու տոննա բանջարեղեն և այլ գյուղատնտեսական մըթերքներ, էլ չեմ խոսում իր տնամերձից ըստացած եկամտի մասին։ Արշակյանի նման շատերը կան մեր գյուղում։

Պետք է խոստովանել սակայն,— ասում է ագիտատոր Ոսկանյանը,— որ մեր լավագույն կոլտնտեսականների կողքին կան նաև այնպիսիները, որոնք լրացնում են ընկեր Խրուշչովի ասած շաքաշնիկների թիվը և խոչընդոտ հանդիսանում մեր կոլտնտեսության առաջընթացին։ Նրանք ոչ միայն չեն աշխատում, հանրօգուտ աշխատանք չեն կատարում, այլև խանգարում են ընդհանուր գործին։ Որպես օրինակ, կարելի է բերել Հովհաննես Գրիգորյանին, որն իր ընտանիքի հետ միասին վաստակել է ընդամենը 60 աշխօր, Սերյոժա Զուլբակյանին, որն ունի 80 աշխօր։ Ճիշտ է, այդպիսիները քիչ են, բայց պետք է պայքարել նմանների դեմ, ամրապնդել կոլտնտեսային աշխատանքային կարգապահությունը։

—Ընկերներ, մենք խոսեցինք մեր կոլտնտեսության լավ աշխատանքի մասին, բայց դեռևս նա ունի լուրջ թերություններ։ Դրանցից մեկն այն է, որ մեր կոլտնտեսությունը համարվելով ճակնդեղացան կոլտըն-



տեսություն, անցյալ տարի համեմատաբար ցածր բերք ստացավ։ Ճիշտ է, 1956 թվականի 180 ցենտների դիմաց 1957 թվականին ստացավ 209 ցենտներ, բայց դա քիչ է։ Մեր հնարավորությունները մեծ են, մենք կարող ենք ստանալ 300—400 ցենտներ բերք, ինչպես այդ ստանում են մեր հարևան Ղարիբջանյանի, Ազատանի կոլտնտեսությունները։ Անբավարար է զարգանում նաև թռչնաբուծությունը։ Այնուհետև ագիտատորը ձայն է տալիս կոլտնտեսության նախագահ Վ. Կադայանին, որը պատմում է կոլտնտեսության հեռանկարների մասին։ Նա ասում է.— որպեսզի մեր կոլտնտեսությունը անասնապահությունից ավելի շատ մթերք ստանա, անհրաժեշտ է ավելացնել ցանովի խոտհարքների տարածությունը, բարձրացնել եգիպտացորենի բերքատվությունը, այն հաշվով, որ հեկտարից ստացվի 300—400 տոննա սիլոսային մասսա։

Ելույթներ ունեցան նաև պարտկազմակերպության քարտուղար Ա. Բաբուջյանը, զոոտեխնիկ Ա. Կնյազյանը, կոլտնտեսական Պ. Գևորգյանը և ուրիշներ։

Գ. ԲԱՐՍԵՂՅԱՆ

---

# ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԾԱՂԿՈՒՄԸ ՍՍՌՄ-ում

(Թվեր և փաստեր)

Նախահեղափոխական Ռուսաստանում ապրող 9 տարեկանից բարձր հասակի բնակչության 76 տոկոսը անգրագետ էր։ Իսկ երկրի ծայրամասերում բնակվող շատ ժողովուրդներ գրեթե ամբողջությամբ անգրագետ էին։

Անգրագիտության վերացման ուղղությամբ Սովետական իշխանության կատարած հսկայական աշխատանքի շնորհիվ 1926 թվականին 9 տարեկանից մինչև 49 տարեկան հասակի գրագետ մարդկանց թիվը երկրում հասավ 57 տոկոսի, 1939 թվականին՝ 89 տոկոսի, իսկ երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին անգրագիտությունը ՍՍՌՄ-ում հիմնականում վերացվեց։

1956—1957 ուսումնական տարում մեր երկրում սովորում էին 50,4 միլիոն մարդ։ Այդ նշանակում է, որ ՍՍՌՄ-ում յուրաքանչյուր հազար բնակչից 249-ը կամ 4-ից մեկը սովորում է։

Երկրում գործող տարրական, յոթնամյա և



միջնակարգ դպրոցներում դասավանդումը կատարվում է ՍՍՌՄ ժողովուրդների 59 լեզվով։ Միջնակարգ դպրոցների թիվը (ներառյալ բանվորական և գյուղական երիտասարդական դպրոցները) 1956—1957 ուսումնական տարում ավելացավ 3 հազարով, իսկ 10-րդ դասարանն ավարտողների թիվը հասավ 1,5 միլիոն մարդու։

ՍՄԿԿ 20-րդ համագումարի Դիրեկտիվների համաձայն 1956—1957 ուսումնական տարվանից երկրում կազմակերպվեցին բազմաթիվ գիշերօթիկ դպրոցներ։ 1957 թվականին նրանցում սովորում էին մոտ 67 հազար մարդ։

1957 թվականին բոլոր տեսակի հանրակրթական դպրոցներում սովորողների թիվը համեմատած ցարական Ռուսաստանի սովորողների թվի հետ աճել է 3 անգամ։ Իսկ սովորողների աճը ըստ առանձին միութենական ռեսպուբլիկաների, 1914 թվականի համեմատությամբ, բնութագրվում է հետևյալ տվյալներով։ Ուզբեկական ՍՍՌ՝ 76 անգամ, Ղազախական ՍՍՌ՝ 13 անգամ, Կիրգիզական ՍՍՌ՝ 46 անգամ, Տաջիկական ՍՍՌ՝ 827 անգամ, Թուրքմենական ՍՍՌ՝ 34 անգամ։

1914 թվականին ՍՍՌՄ-ի տերիտորիայի ներկա սահմաններում կար ընդամենը 450 տեխնիկում և այլ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություն՝ 54 հազար սովորողներով։ Ներկայումս ՍՍՌՄ-ում կա 3 հազար 600 այդ կարգի ուսումնա-

կան հաստատություններ, ուր սովորում են ավելի քան 2 միլիոն մարդ։

✪ Նախառևոլյուցիոն շրջանում այժմյան Կիրգիզական ՍՍՌ-ի, Տաջիկական ՍՍՌ-ի, Թուրքմենական ՍՍՌ-ի, 12 ավտոնոմ ռեսպուբլիկաների, 45 երկրամասերի և մարզերի տերիտորիաներում ոչ մի տեխնիկում չի եղել։ Ներկայումս այդ բոլոր վայրերում կան տեխնիկումներ։

✪ Սովետական իշխանության տարիներին (1918—1957 թ. թ.) տեխնիկումները և միջնակարգ մասնագիտական դպրոցները երկրին տվել են 6 միլիոն 200 հազար երիտասարդ մասնագետ։ Միայն 1957 թվականին տեխնիկումներն ավարտել են 517 հազար հոգի՝ 1914 թվականի 7 հազար 400-ի փոխարեն։

✪ 1914 թվականին Ռուսաստանում գործել է 105 բարձրագույն ուսումնական հաստատություն, 127,4 հազար ուսանողներով։ Ներկայումս ՍՍՌՄ-ի 223 քաղաքներում կան 767 բարձրագույն ուսումնական հաստատություն 2 միլիոն ուսանողներով, կամ 16 անգամ ավելի, քան 1914 թվականին։

✪ Սովետական իշխանության տարիներին բարձրագույն ուսումնական հաստատությունները երկրին տվել են 3,8 միլիոն բարձրագույն կրթությամբ մասնագետներ։ Միայն 1957 թվականին բաց է թողնված 257 հազար երիտասարդ մասնագետ, 1914 թվականի 12 հազար 200-ի դիմաց։

✪ Ամերիկյան աղբյուրների խոստովանությամբ



1953—1954 թվականներին ինժեներների բաց թողումը ՍՍՌՄ-ում ավելի քան 2 անգամ գերազանցել է ԱՄՆ-ին։

✪ 1956—1957 թվականներին յուրաքանչյուր 10 հազար բնակչից բուհերում սովորում էին, ՍՍՌՄ-ում՝ 100 մարդ, ՌՍՖՍՌ-ում՝ 113 մարդ, Ուկրաինական ՍՍՌ-ում՝ 85 մարդ, Բելոռուսական ՍՍՌ-ում՝ 65 մարդ, Ուզբեկական ՍՍՌ-ում՝ 98 մարդ, Ղազախական ՍՍՌ-ում՝ 65 մարդ, Վրացական ՍՍՌ-ում՝ 100 մարդ, Ադրբեջանական ՍՍՌ-ում՝ 102 մարդ, Լիտվական ՍՍՌ-ում՝ 89 մարդ, Մոլդավական ՍՍՌ-ում՝ 66 մարդ, Լատվիական ՍՍՌ-ում՝ 81 մարդ, Կիրգիզական ՍՍՌ-ում՝ 78 մարդ, Տաջիկական ՍՍՌ-ում 90 մարդ, Հայկական ՍՍՌ-ում՝ 126 մարդ, Թուրքմենական ՍՍՌ-ում՝ 94 մարդ, Էստոնական ՍՍՌ-ում 108 մարդ։

✪ 1957 թվականի հունվարի մեկի տվյալներով ՍՍՌՄ-ում կար գիտությունների 21 ակադեմիա։ Ներկայումս յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկա ունի իր գիտությունների ակադեմիան, իսկ Մոլդավական ՍՍՌ-ում ՍՍՌՄ-ի Գիտությունների ակադեմիայի բաժանմունքը։ Բացի այդ, գյուղատնտեսական ակադեմիաների կազմակերպումն ընթացքի մեջ են՝ Ուկրաինական ՍՍՌ-ում՝ Բելոռուսական ՍՍՌ-ում և Ուզբեկական ՍՍՌ-ում։

✪ 1957 թվականի հունվարի 1-ի տվյալներով, գիտական հիմնարկների ընդհանուր թիվը ՍՍՌՄ-ում

համնում էր 2756-ի։ 1914 թվականին ՍՍՌՄ-ի տերիտորիայի վրա եղել է 289 ոչ-մեծ գիտական հիմնարկ։

✪ 1956 թվականին գիտական աշխատողների ընդհանուր թվից 9 հազար 800 հոգի ունեին գիտությունների դոկտորի աստիճան, 85 հազար 700-ը՝ գիտությունների թեկնածուի, 9 հազար 100-ը՝ պրոֆեսորի գիտական կոչում, բացի այդ կային՝ 30 հազար 400 դոցենտ, 15 հազար 600 ավագ գիտական աշխատող, 17 հազար 800 կրտսեր գիտական աշխատող և ասիստենտ։

✪ Բնակչության կուլտուր-մասսայական սպասարկման համար ՍՍՌՄ-ում ստեղծված է 127 հազար ակումբային հիմնարկ, ընդ որում 115 հազար 100-ը կամ 91 տոկոսը գտնվում են գյուղական վայրերում։

✪ 1956 թվականին երկրում կար բոլոր տեսակի 394 հազար գրադարան 1,5 միլիարդ օրինակ գրքային ֆոնդով։

✪ 1957 թվականի սկզբին կար ավելի քան 144 հազար մասսայական գրադարան՝ 653 միլիոն օրինակ գրքային ֆոնդով, այն դեպքում, երբ մինչ ռևոլյուցիան երկրում եղել է 14 հազար մասսայական գրադարան 9,5 միլիոն օրինակ գրքային ֆոնդով։

✪ 1957 թվականի սկզբին Սովետական Միության մեջ կար 62 հազար 900 կինո-սարքավորում, 1914 թվականի 1500-ի փոխարեն, կամ 41 անգամ ավելի, քան նախառևոլյուցիոն Ռուսաստանում։ Հանդիսա-



տեսների թիվը 1956 թվականին եղել է 2,8 միլիարդ մարդ։

✪ 1957 թվականին ՍՍՌՄ-ում եղել է 512 պրոֆեսիոնալ թատրոն, ցարական Ռուսաստանում եղած 172-ի դիմաց։ 1956 թվականին հանդիսատեսների թիվը հասավ 80 միլիոնի։ Թատրոններում բեմադրությունները կատարվում են ՍՍՌՄ ժողովուրդների ավելի քան 40 լեզվով։

✪ ՍՍՌՄ-ում 1918—1956 թվականների ընթացքում հրատարակվել է 1 միլիոն 328 հազար անուն գիրք՝ 19 միլիարդ 300 միլիոն օրինակ տիրաժով։ Դա համարյա 10 անգամ ավելի է քան ցարական Ռուսաստանում վերջին 30 տարվա ընթացքում հրատարակված գրքերի քանակը։ Միայն 1956 թվականին հրատարակվել է 59 հազար 500 գիրք՝ 1 միլիարդ 107 միլիոն օրինակ տիրաժով, որը 1913 թվականի համեմատությամբ 11 անգամ ավելի է, իսկ թերթերի մեկ անգամվա տիրաժը՝ 16 անգամ։

✪ Կուլտուրայի զարգացման բնագավառում խոշոր հաջողություններ ունի մեր ռեսպուբլիկան, ուր անընդհատ ընդլայնվում է Հայկական ՍՍՌ ժողովրդական կրթության, կուլտուր-լուսավորական, գիտական հիմնարկների ցանցը։ Վերջին 4 տարվա ընթացքում ռեսպուբլիկայում հիմնվեցին նոր տիպի ուսումնական հաստատություններ, գիշերօթիկ դպրոցներ։ Այդ նույն ժամանակ ժողովրդական կրթության համար ծախսվել է մեկ միլիարդ 405 միլիոն 364 հազար ռուբլի։

✪ Վերջին երկու տարում դպրոցները հիմնարկձեռնարկություններից, կոլտնտեսություններից, ՄՏ կայաններից ու սովխոզներից ստացել են 141 հաստոց, գյուղատնտեսական 253 մեքենա, 30 ավտոմեքենա, 87 տրակտոր։ Դպրոցներում ստեղծվել են մետաղամշակման 51, փայտամշակման 96 և խառը տիպի 138 արհեստանոց։

✪ Վերջին չորս տարում կոլտնտեսային գյուղում բացվել են 44 նոր ակումբ, 88 գրադարան, 4 կուլտուրայի տուն։ Յուրաքանչյուր տարի գրադարանները ստանում են ավելի քան մեկ միլիոն ռուբլու գրականություն։

✪ Ռեսպուբլիկայում ներկայումս գործում է պետական, արհմիութենական, գերատեսչական և դպրոցական ավելի քան 500 կինո-սարքավորում։ Միայն վերջին երկու տարում Երևանում բացվել է 10 նոր կինո-թատրոն, իսկ գյուղերում 25 կինոկետ։ 1954 թվականի 7 միլիոն կինո-դիտողների փոխարեն 1957 թվականին նրանց թիվը հասավ 14 միլիոն մարդու։

✪ Անցած 4 տարում «Հայֆիլմ» կինո-ստուդիան թողարկել է 13 գեղարվեստական ֆիլմ, 17 կինոակնարկ, 3 կարճամետրաժ ֆիլմ, 36 կինոժուռնալ և կրկնօրինակել է 25 կինոնկար։

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԸ

## (Թվեր և փաստեր)

Հայաստանի աշխատավորները հաջողությամբ կենսագործելով ՍՄԿԿ XX համագումարի Դիրեկտիվները, ռեսպուբլիկայի տնտեսության և կուլտուրայի զարգացման բնագավառում ձեռք են բերել լուրջ նվաճումներ։ Ահա մի շարք փաստեր, որոնք բնորոշում են այդ նվաճումները միայն մեկ տարվա՝ 1957 թվականի ընթացքում։

★ Արդյունաբերության համախառն արտադրանքի արտադրության 1957 թվականի պետական պլանը ռեսպուբլիկայում կատարվել է 102 տոկոսով։ Նախորդ տարվա համեմատությամբ, 1957 թվականին ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը աճել է 10 տոկոսով։

★ Հայաստանի ժողտնտխորհի մեջ այժմ միավորված է 230 արդյունաբերական ձեռնարկություն, որոնց համախառն արտադրանքը կազմում է ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության արտադրանքի 80 տոկոսը։ Ժողտնտխորհի ձեռնարկություններն արտադրում են թիթեղագլանվածքի, պղնձի, ալյումինի, գե-

ներատորների, տրանսֆորմատորների, էլեկտրաշարժիչների, կոմպրեսորների, հիդրոտուրբինների, կենտրոնախույս պոմպերի, ավտոդողերի, ցեմենտի, մետաքսի ու բրդի գործվածքների և արտադրանքի այլ տեսակների արտադրության 100 տոկոսը և բամբակե գործվածքների, կաշվե կոշիկի, գուլպեղենի, պահածոների և այլ արտադրանքի մեծ մասը։

★ Անցյալ տարի ռեսպուբլիկայի արդյունաբերությունը անշեղորեն զարգացել է տեխնիկական պրոգրեսի, արտադրության տեխնոլոգիայի կատարելագործման, աշխատատար պրոցեսների անընդհատ մեքենայացման ուղիով։ Դրանց շնորհիվ լայն հնարավորություններ են ստեղծվել արտադրանքի նորանոր տեսակներ թողարկելու համար։ Մեքենաշինական և հաստոցաշինական արդյունաբերությունը յուրացրել է 30 և 50 կիլովատանոց, «ԵՍ» տիպի միասնական սերիայի սինքրոնային գեներատորների, ՎՈՒ—3/8 մարկայի օդային կոմպրեսորի արտադրությունը։ Այժմ մեր թեթև արդյունաբերությունը թողարկում է նոր տեսակի գործվածքներ՝ «Սևան», «Նաիրի», «Մասիս» մարկաների տրիկոներ, որոնք պատրաստվում են վիսկոզի հետ մանված բրդից, ինչպես նաև «Երևան» դրապը։

★ 1957 թվականին արտադրվել է 190 հազար 351 տոննա հանքային պարարտանյութ, 75 հազար 60 տոննա փաթեթալար, նորմալ լուսավորության 23 միլիոն 559 հազար էլեկտրալամպ, 1 միլիոն 502 հազար



զարթեցուցիչ ժամացույց, 60 միլիոն 173 հազար մետր բամբակե գործվածք, 2 միլիոն 960 հազար մետր բրդե գործվածք, 6 միլիոն 264 հազար մետր մետաքսե գործվածք, 26 միլիոն 203 հազար զույգ գուլպա, 3 միլիոն 829 հազար զույգ կաշվե կոշիկ, 9.383 տոննա շաքարավազ, 11.235 տոննա հրուշակեղեն, 1.725 տոննա կենդանական յուղ (չհաշված կոլտնտեսությունների ու բնակչության արտադրածը), 15.864 տոննա կաթնամթերք՝ վերածած կաթի, 3.515,4 տոննա երշիկ, 74 միլիոն 816 հազար պայմանական տուփ պահածո, 15.648 տոննա օճառ, 2 միլիոն 925,5 հազար դեկալիտր խաղողի գինի, 6 միլիարդ 78 միլիոն հատ գլանակ և սիգարետ ու արտադրանքի բազմաթիվ այլ տեսակներ։

★ Աշխատանքի արտադրողականության աճման պլանը ամբողջությամբ վերցրած ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ գերակատարված է։ 1956 թվականի համեմատությամբ, 1957 թվականին աշխատանքի արտադրողականությունն աճել է 2 տոկոսով։ Տեղի է ունեցել ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի ինքնարժեքի իջեցում, որի շնորհիվ արտապլանային խնայողությունը կազմել է 40 միլիոն ռուբլի, որից 29 միլիոն ռուբլին միայն ժողտնտխորհի ձեռնարկություններում։

★ 1957 թվականին զգալի հաջողությունների է հասել մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։ Գյուղի աշխատավորները ջերմորեն արձագանքելով գյու-

ղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին Կոմունիստական պարտիայի կոչին և լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, անցյալ տարի երկրին տվեցին ավելի շատ հացահատիկ, բանջարեղեն, բուրդ, կաթ, ձու և այլ մթերքներ։ Այսպես, օրինակ, բոլոր կատեգորիաների տնտեսություններում 1957 թվականին հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը, 1956 թվականի համեմատությամբ, ավելացավ 34 տոկոսով, ծխախոտինը՝ 12 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 16 տոկոսով, բանջարեղենինը՝ 5 տոկոսով, կարտոֆիլինը՝ 4 տոկոսով և այլն։

★ Հաջողությամբ է զարգանում նաև անասնաբուծությունը։ Ռեսպուբլիկայում ամբողջությամբ վերցրած խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը 1957 թվականի ընթացքում ավելացել է 55,2 հազար գլխով, այդ թվում կովերինը՝ 28,2 հազար գլխով, խոզերինը՝ 16,1 հազար գլխով, ոչխարներինը՝ 237,2 հազար գլխով։ Անցյալ տարի, ամբողջությամբ վերցրած, ռեսպուբլիկայում կաթի արտադրությունն ավելացել է 11 տոկոսով, բրդինը՝ 10 տոկոսով ձվինը՝ 2 տոկոսով։

★ Մեկ ֆուրաժային կովի միջին կաթնատվությունը կոլտնտեսություններում 1957 թվականին կազմել է 1342 կիլոգրամ, որը 1956 թվականի համեմատությամբ ավել է 16 տոկոսով, սովխոզներում այն կազմել է 1973 կիլոգրամ։



★ Անցյալ տարի ռեսպուբլիկայում 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրվել է 22 ցենտներ միս, 193 ցենտներ կաթ, 229 կիլոգրամ բուրդ, իսկ հացահատիկային կուլտուրաների 100 հեկտարի դիմաց՝ 34 հազար հատ ձու։

★ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները պայքարում են հարազատ երկրին տարեցտարի ավելի շատ խաղող և այլ միրգ ու պտուղներ տալու համար։ Այդ նպատակով նրանք ամեն տարի ընդլայնում են այգիների տարածությունը։ Այսպես, անցյալ տարի սովխոզների գծով ռեսպուբլիկայում գցված է 4,8 անգամ ավելի խաղողի այգի և 2,6 անգամ ավելի պտղատու այգի, իսկ կոլտնտեսությունների գծով՝ 63 տոկոսով ավելի խաղողի այգի և 34 տոկոսով ավելի պտղատու այգի, քան 1956 թվականին։

★ Լայնորեն ամրապնդվում է ռեսպուբլիկայի գյուղատնտեսության նյութա-տեխնիկական բազան, ավելի մեծ մասշտաբներով են մեքենայացվում աշխատատար պրոցեսները։ 1957 թվականին տրակտորների պարկը, 1956 թվականի համեմատությամբ, ավելացել է 6 տոկոսով, կոմբայններինը՝ 18 տոկոսով։ Մեքենատրակտորային կայանները 1957 թվականին գյուղատնտեսական աշխատանքների պլանները կատարեցին 108 տոկոսով։

★ Կոլտնտեսություններում գրեթե լրիվին մեքենայացված են ցելի, ցրտահերկի, բամբակենու և շաքա-

րի ճանկոեղի ցանքի աշխատանքները։ Կոմբայններով հավաքվել է հացահատիկային կուլտուրաների 70 տոկոսը։

★ 1957 թվականին, նախորդ տարիների համեմատությամբ, խոշոր չափով ավելացել է կապիտալ շինարարության ծավալը։ 1956 թվականի համեմատությամբ, անցյալ տարի 25 տոկոսով աճել է կապիտալ ներդրումների ծավալը և կազմել է 1,3 միլիարդ ռուբլի։ Ամբողջությամբ վերցրած, ռեսպուբլիկայում կապիտալ ներդրումների պլանը կատարվել է 97 տոկոսով։ Անցյալ տարի շահագործման են հանձնվել 7 խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, որոնցից 5-ը ժողտնտխորհի գծով։ Հաջողությամբ շարունակվել է ջրանցքների և ոռոգիչ սիստեմների շինարարությունը, որի շնորհիվ ոռոգելի հողերի տարածությունը ավելացել է 3.400 հեկտարով, ջրովի են դարձել 4.155 հեկտար խոտհարքեր։ Չորացվել են 4.300 հեկտար ճահիճներ։ Գնալով էլ ավելի է զարգանում շինարարության ինդուստրացումը, բարձրանում նրա մեքենայացման մակարդակը։

★ Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքը բեռների բեռնման պլանը անցյալ տարի կատարել է 102 տոկոսով։ Բեռնատար վագոնի շրջապտույտի միջին ժամանակը նորմայի դիմաց կրճատվել է 4 տոկոսով, իսկ նախորդ տարվա դիմաց՝ 5 տոկոսով։ Ավտոմոբիլային տրանսպորտը բեռնաշրջա-



նառության պլանը կատարել է 100,6 տոկոսով, բեռների փոխադրումներինը՝ 105 տոկոսով, ուղևորների փոխադրումների պլանը՝ 109 տոկոսով։

★ Ժողովրդական տնտեսության հարաճուն վերելքի հիման վրա, անշեղորեն աճում է ռեսպուբլիկայի ազգային եկամուտը, օրեցօր բարելավվում ժողովրդի նյութական բարեկեցությունը, ավելանում կոլտնտեսականների դրամական եկամուտները։ Դրա շնորհիվ աճել է բնակչության կողմից ապրանքների գնումը պետական ու կոոպերատիվ առևտրի ցանցում։ Այդ մասին է խոսում այն փաստը, որ պետական ու կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը (չհաշված սպառկոոպի կոմիսիոն առևտուրը) 1957 թվականին կազմել է 3 միլիարդ 860 միլիոն ռուբլի և 1956 թվականի համեմատությամբ ավելացել է 17 տոկոսով։ 1957 թվականին բնակչությանը ավելի շատ միս, թռչուններ, երշիկ, ձկնեղեն, կենդանական յուղ, շաքար, կաթ, բանջարեղեն, բամբակե և բրդե գործվածքներ, կոշիկ, կահույք, հեռուստացույց, լվացքի ու կարի մեքենաներ է վաճառվել, քան 1956 թվականին։

★ Մեծ չափով աճել է ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվորների ու ծառայողների թիվը։ 1957 թվականի վերջին այն կազմել է 330 հազար մարդ և նախորդ տարվա համեմատությամբ ավելացել է 6 տոկոսով։

★ Գնալով բարելավվում է ժողովրդական տնտե-

տության համար բանվորական կադրեր պատրաստելու գործը։ 1957 թվականին Աշխատանքային ռեզերվների սիստեմի ուսումնարաններն ու դպրոցներն ավարտել են 2,2 հազար երիտասարդ բանվորներ, որոնցից 1,1 հազարը գյուղատնտեսության մեխանիզատորներ են։

★ Սովետական պետությունը մեծ հոգ է տանում բնակչության բնակարանային պայմանների բարելավման մասին։ Մեր ռեսպուբլիկայում լայն թափ է ընթացել բնակարանային շինարարությունը։ 1957 թվականին պետական բնակարանային շինարարության և պետական վարկի օգնությամբ անհատական բնակարանային շինարարության գծով կառուցվել և շահագործման են հանձնվել ավելի քան 270 հազար քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ։ Բացի դրանից, կոլտնտեսականներն ու գյուղական ինտելիգենցիան կառուցել են ավելի քան 9 հազար բնակելի տուն։

★ Ռեսպուբլիկայում լավ է զարգանում ժողովրդական կրթության գործը։ Բոլոր տեսակի հանրակրթական դպրոցներում 1957—58 ուսումնական տարում սովորում է ավելի քան 300 հազար մարդ։ Հինգ տոկոսով ավելացել է միջնակարգ դպրոցների թիվը։ 1957 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, 9 տոկոսով ավելացել է 10-րդ դասարանների շրջանավարտների թիվը։ Ուսուցիչների թիվը նույն ժամանակամիջոցում ավելացել է 3 տոկոսով։

★ Հայաստանի բուհերն ու տեխնիկումները տա-



րեցտարի ավելացնում են ժողովրդական տնտեսության համար անհրաժեշտ մասնագետների թողարկումը, բարելավվում նրանց պատրաստման գործը։ Անցյալ տարի ռեսպուբլիկայի բոլոր տեսակի բուհերում սովորում էր 21 հազար ուսանող, որը 5 տոկոսով ավելի է 1956 թվականի համեմատությամբ։ Տեխնիկումներում և մյուս միջնակարգ մասնագիտական ուսումնարաններում սովորում էր ավելի քան 13 հազար մարդ։

★ 1957 թվականին ասպիրանտուրան ավարտել է 127 մարդ։ 1957 թվականին գիտական և գիտա-մանկավարժական աշխատանք էին տանում 2.988 գիտաշխատող։

★ Բնակչության կուլտուրական մակարդակը բարձրացնելու ուղղությամբ մեծ գործ են կատարում կուլտուր-լուսավորական հիմնարկները, որոնց ցանցը նույնպես մեծ չափով ընդլայնվել է։ 1957 թվականի վերջերին կային 1291 մասսայական գրադարաններ, որոնք ունեին մոտավորապես 6 միլիոն գիրք, կամ 420 հազարով ավելի, քան 1956 թվականին։

★ 1957 թվականին մոտ 28 հազար երեխաներ հանգստացել են պիոներական ճամբարներում։

★ Ռեսպուբլիկայում անցյալ տարի հիվանդանոցային մահճակալների թիվը ավելացել է 9 տոկոսով, բժիշկների թիվը՝ մոտավորապես 6 տոկոսով։

---

# ԳՈՐԾԱԴՈՒԼԱՅԻՆ ՇԱՐԺՈՒՄԸ ԿԱՊԻՏԱԼԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ 1957 ԹՎԱԿԱՆԻՆ

Ի. ՊԵՆՋԵՆԿՈ

— Դասակարգային պայքարը պայմանական բնույթ է կրում, աշխատավորները և արհմիությունները պետք է նրանից հրաժարվեն, —այսպես տրոշեցին Քրիստոնեական-դեմոկրատական միություն բուրժուական պարտիայի արևմտա-բեռլինյան կազմակերպության անդամները, որոնք հունվարի 18-ին, Բեռլինում գումարելով հատուկ համագումար, քննարկում էին «Ժամանակակից հասարակության մեջ արհմիությունների դերի մասին» հարցը։

Հանգամանքների պատահական բերումով հենց այդ օրը Արևմտյան Գերմանիայի շատ խոշոր քաղաքներում տեղի էին ունենում կոմունալ հիմնարկների և քաղաքային տրանսպորտի աշխատողների գործադուլները։ Եվ



այդ ելույթները բոլորովին էլ պայմանական բնույթ չէին կրում։ Աշխատավորները վճռականորեն պահանջում էին աշխատավարձի ավելացում։ Այդ նույն օրը ինֆորմացիոն գործակալությունները և թերթերը այսպիսի հաղորդագրություններ հրապարակեցին.

— ԱՄՆ-ի Աշխատանքի մինիստրությունը հրապարակել է տվյալներ, որոնց համաձայն հունվարի 5-ից մինչև 11-ը երկրում գրվել է ավելի քան 600 հազար նոր դիմում, որոնք պարունակում են գործազրկության համար նպաստ ստանալու խնդրանք։

— Փարիզում հայտնի է դարձել, որ վերջին վեց ամսվա ընթացքում տարբեր ապրանքների 250 տեսակների գները միջին հաշվով բարձրացել են 10,4 տոկոսով։

— Անգլիայի նավաշինական և մեքենաշինական արդյունաբերության բանվորների արհմիությունների կոնֆեդերացիան, երկաթուղայինների Ազգային միությունը և հանքափորների Ազգային միությունը հանդես եկան, պահանջելով բարձրացնել աշխատավարձը, քանի որ գների անընդհատ աճը այն բանին է հասցրել, որ աշխատավորները այլևս չեն կարողանում ծայրը ծայրին հասցնել։

— Արգենտինայում գործադուլ են անում շինարարները, բանկային ծառայողները, ավիա-աշխատողները, որոնք նույնպես պընդում են բարձրացնել աշխատավարձը։

Չորս հաղորդագրությունները չորս տարբեր երկրներից ծանոթ պատկեր էին նկարագրում՝ աշխատավորների նյութական վիճակը կապիտալի երկրներում գնալով վատանում է, նրանք պայքարի են ելնում։

Այդ դասակարգային պայքարի թափն ու սրությունը ցայտուն կերպով են բնութագրում անցյալ տարվա մասսայական գործադուլները։ 1957 թվականին գործադուլային մարտեր են տեղի ունեցել բոլոր հինգ մայր ցամաքներում՝ Հոլանդիայում և Պերուում, Պուերտո-Ռիկոյում և Իսպանիայում, Հարավ-Աֆրիկյան Միությունում և Չիլիում, Ֆինլանդիայում և Պորտուգալիայում, Դանիայում և Ավստրալիայում, Թուրքիայում և Նորվեգիայում, Իտալիայում և Իրանում, Պակիստանում և Ուրուգվայում, Մադագասկարում և Ցեյլոնում։

114 օր տևեց Շլեզվիգ—Գոլշտեյնի (Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկա) 35 հազար մետաղագործների գործադուլը։ Ճապոնիայի ավելի քան տաս միլիոն բանվորներ մասնակցություն ունեցան աշխատա-



վարձի բարձրացման համար կազմակերպված «գարնանային» և «աշնանային» բազմամսյա գործադուլին։ Արգենտինայի պատմության մեջ չտեսնված ընդհանուր գործադուլը, որը տեղի ունեցավ հոկտեմբերի 23-ից 24-ը, ընդգրկեց ավելի քան երկու միլիոն մարդ, այսինքն երկրում վարձու աշխատանքով զբաղված մարդկանց ընդհանուր թվի կեսը։ Բրազիլիայի ավելի քան մեկ միլիոն աշխատավորներ մասնակցեցին գործադուլային մարտերին, պահանջելով բարձրացնել աշխատավարձը։ Հունաստանում արդյունաբերության, առևտրի և տրանսպորտի մեջ զբաղված յուրաքանչյուր երեք աշխատավորից երկուսը մասնակցում էր գործադուլին։

Նույնիսկ մեկ օրով չընդհատվող գործադուլների ալիքը ծավալվում էր Ֆրանսիայում։ Բազմաթիվ անգամ գործադուլ արեցին մետաղագործները, մեքենաշինարարները, հանքափորները, քիմիագործները, նավթագործները, շինարարները, թղթի, սննդի արդյունաբերության բանվորները, տեքստիլագործները, դերձակները, կոշկագործները, ծխախոտագործները, նավահանգիստների, գազի գործարանների, էլեկտրակայանների, հասարակական տրանսպորտի, երկաթուղի-

ների բանվորները, փոստի, հեռագրատների, բանկերի, մաքսատների, ավիագծերի, սոցիալական ապահովության օրգանների ծառայողները։ Հոկտեմբերի 19-ին աշխատանքը մեկ օրով դադարեցրին ավելի քան մեկ միլիոն դասատուներ, գիտաշխատողներ, կապի, բժշկական, կոմունալ հիմնարկների և ձեռնարկությունների աշխատողներ, բոլոր պետական հիմնարկների ծառայողները։ 30 պրոֆեսիայի պատկանող մի քանի միլիոն աշխատավորներ հոկտեմբերի 25-ին մասնակցեցին խոշորագույն ընդհանուր գործադուլին։

Գործադուլային շարժումը մեծ թափ է ընդունել Իտալիայում։ Բավական է ասել, որ միայն 1957 թվականի առաջին վեց ամսվա ընթացքում նրան մասնակցել է չորս միլիոն մարդ։ Մետալուրգիական և շինարարական արդյունաբերության հարյուր հազարավոր աշխատավորների, պոլիգրաֆիստների ու գյուղատնտեսական բանվորների ելույթները աչքի էին ընկնում արտասովոր համառությամբ։ Մեծ ելույթներով նշանավորվեց տարեմուտը։ Այսպես, նոյեմբերին Միլանում գործադուլ արեցին քաղաքի 153 արդյունաբերական ձեռնարկության 90 հազար բանվորներ, նոյեմբեր-դեկտեմբերին



մի քանի անգամ աշխատանքը դադարեցրին 20 հազար նավաշինարարներ և մետաղագործներ, դեկտեմբերին գործադուլ արեցին սիցիլիական 10 հազար հանքափորներ, պետական ճանապարհային տնտեսության յոթ հազար բանվորներ։ Ամերիկայի Միացյալ Նահանգներում Աշխատանքի մինիստրության հաշվումներով անցյալ տարի տեղի է ունեցել 3600 գործադուլ, որոնց հետևանքով կորել է 16 միլիոն բանվորական օր։ Այլ կերպ ասած, ԱՄՆ-ում, կապիտալիզմի այդ միջնաբերդում, ամեն օր ծագում էր մոտ 10 գործադուլ։

Այդ կապակցությամբ ինչպե՞ս չհիշել Աշխատանքի Ամերիկյան Ֆեդերացիայի և Արտադրական Արհմիությունների Կոնգրեսի նախագահ, անուղղելի օպորտունիստ և համաձայնողական Ջորջ Մինիին, որը քծնելով կառավարող շրջաններին, մի անգամ ասաց, որ ինքը երբեք բանվորներին գործադուլի կոչ չի արել։

Բայց աշխատավորների ելույթները արդյոք «դասակարգային խաղաղության» միայն ամերիկյան և արևմտա-գերմանական քարոզիչների՞ն են անհարմար վիճակի մեջ դրել։

Բոլոր երանգի օպորտունիստները, ճըդ-

նելով հիմնավորել «դասակարգային պայքարի մարման» կեղծ թեորիան, հաճախ օրինակներ բերելու համար դիմում են այնպիսի, իրենց կարծիքով, «բարեկեցիկ» երկրների, ինչպես Անգլիան, Կանադան, Բելգիան, Շվեդիան։

Կապիտալի և աշխատանքի միջև եղած փոխհարաբերությունները այդ երկրներում ինչպիսի՞ պատկեր էին ներկայացնում անցյալ տարի։

Անգլիայում չես գտնի արդյունաբերության մի այնպիսի ճյուղ, որտեղ վերջին 12 ամիսների ընթացքում աշխատանքային կոնֆլիկտներ տեղի ունեցած չլինեն։ Աշխատանքի մինիստրության տվյալներով, 1957 թվականի հունվարից մինչև նոյեմբեր երկրում տեղի է ունեցել 2.850 գործադուլ, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի 2523 գործադուլի փոխարեն։ Բացի դրանից, արդյունաբերական պրոլետարիատի և կապիտալի միջև ամենասուր կոնֆլիկտը անցյալ տարի տեղի է ունեցել հենց Անգլիայում։ Մեկ միլիոն 700 հազար մեքենաշինարարների և նավաշինարարների քսանօրյա գործադուլը երկրում չուներ իրեն հավասարը 1926 թվականի նշանավոր ընդհանուր գործադուլի ժամանակներից ի վեր։



Կանադայում, Աշխատանքի մինիստրության հրապարակած նախնական տվյալների համաձայն անցյալ տարվա 11 ամսվա ընթացքում տեղի է ունեցել 243 աշխատանքային կոնֆլիկտ (գործադուլներ և լոկաուտներ), քսանով ավելի, քան նախորդ տարվա ընթացքում։ Հատկապես համառ էր 2800 հնոցապանների իննօրյա գործադուլը, որը միահամուռ պաշտպանություն գտավ երկրի 70 հազար երկաթուղայինների մոտ։

Բելգիայում անցյալ ամռանը մոնոպոլիաների դեմ կատաղի գործադուլային պայքարի ելան մի քանի տասնյակ հազար շինարարներ և 250 հազար մետաղագործներ։ Շվեդիայում սուր բնույթ էր կրում կենսաթոշակների օրենքի շուրջը ծավալված պայքարը։

Այսպես, ուրեմն, Անգլիայի, Կանադայի, Բելգիայի, Շվեդիայի, ինչպես և մյուս կապիտալիստական երկրների աշխատավորները մտադիր չեն հրաժարվելու և չեն հրաժարվում դասակարգային պայքարից։ Պայքարել, գործադուլ անել նրանց ստիպում է կենսամակարդակի անշեղ անկումը, մոնոպոլիստների հարձակումը աշխատավորների իրավունքների վրա։

Եվ, իրոք, մի՞թե նրանք պայքարի չեն ել-

նի, որքան էլ դա ծանր լինի, երբ նրանց սպասում է աշխատանքից ազատվելը, երբ ձեռնարկատերը, չնայած կյանքի արժեքի թանկացմանը, հրաժարվում է ավելացնել նրանց աշխատավարձը։

*Իսկ ի՞նչ է նկատվում այժմ կապիտալիստական երկրներում։ Մի կողմից, սպառազինությունների մրցավազք և, որպես դրա հետևանք, հարկային լծի ուժեղացում, սոցիալական կարիքների համար բյուջետային ծախսերի շեշտակի կրճատում. մյուս կողմից՝ էկոնոմիկայի քաղաքացիական ճյուղերում արտադրության անկում, գործազրկության ավելացում, գների աճ, բնակչության գնողունակության կրճատում, աշխատավորների կենսամակարդակի իջեցում։*

*Թվերը պատմում են.*

ԱՄՆ: *1957 թվականի նոյեմբերին բանվորների ռեալ աշխատավարձը միջին հաշվով 3,3 տոկոսով ցածր է եղել նախորդ տարվա նույն ժամանակվա մակարդակից։ Այդ նույն ամսին սպառման ապրանքների գների ինդեքսը կազմել է 121,6 պունկտ (որպես 100 պունկտ վերցվում է 1947—1949 թ. թ. մակարդակը)։ 1958 թվականի*



*հունվարի կեսին գործազուրկների թիվը երկրում անցնում էր չորս միլիոնից։*

Անգլիա: *Վերջին հինգ տարվա ընթացքում պարենային ապրանքների գները միջին հաշվով աճել են 50 տոկոսով. այդ նույն ժամանակ ֆունտ ստերլինգի գնողունակությունը կրճատվել է գրեթե մեկ քառորդով։ Աշխատանքի մինիստրության տվյալներով, նոյեմբերի կեսերին Անգլիայում գրանցվել է ավելի քան 379 հազար գործազուրկ։*

Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկա: *Վերջին երկու տարվա ընթացքում բարձրացել են 107 անուն լայն սպառման ապրանքների գները։ Մարկայի գնողունակությունը այժմ 50 տոկոսով ցածր է նախապատերազմյան մակարդակից։ Գործազուրկների թիվը գերազանցել է մեկ միլիոն 400 հազար մարդուց (միայն դեկտեմբեր ամսին աշխատանքից ազատվել են 733 հազար բանվոր)։*

*Այսպիսին են գլխավոր կապիտալիստական պետությունների վիճակը բնորոշող փաստերը։ Դրությունը լավ չէ նաև կապիտալի մյուս երկրներում։*

*Աշխատավորները կարո՞ղ են հաշտվել այսպիսի դրության հետ։ Ոչ, չեն կարող և չեն ցանկանում։*

Նրանք կառավարությունից և ձեռնարկատերերից պահանջում են.

ավելացնել աշխատավարձը, սահմանել աշխատավարձի երաշխավորված մինիմում, ավելացնել կենսաթոշակները,

հավասար աշխատանքի համար սահմանել հավասար վարձատրություն,

կրճատել աշխատանքային շաբաթվա տևողությունը և արտաժամյա աշխատանքը,

վերացնել ավտոմատիզացիան և նոր տեխնիկայի կիրառման բացասական հետևանքները (աշխատանքից ազատում, որակավորումից զրկում),

տալ վարձատրվող արձակուրդներ,

ընդլայնել բնակարանային շինարարությունը,

միջոցներ ձեռնարկել արտադրությունում դժբախտ դեպքերը և պրոֆեսիոնալ հիվանդությունները կանխելու ուղղությամբ։

Սրանք կապիտալիստական երկրների միլիոնավոր մարդկանց հիմնական և մշտական պահանջներն են։ Եվ դրանցից գլխավորը, որն այժմ դարձել է միահամուռ, հանդիսանում է աշխատավարձի ավելացման մասին պահանջը։ Կարելի է բերել Անգլիայի օրինակը, որտեղ այժմ աշխատավարձի



բարձրացում են պահանջում մոտ ութ միլիոն աշխատավորներ։

Վերջերս աշխատավարձի բարձրացման և նրա երաշխավորված մինիմում սահմանելու համար նոր «գարնանային» պայքարի ծրագիր ընդունեցին Ճապոնիայի աշխատավորները։ Փետրվարի 3—4-ը Տոկիոյում տեղի ունեցած երկրի 45 արհմիությունների ներկայացուցիչների կոնֆերանսը (այն գումարել էր Ճապոնիայի արհմիությունների Գլխավոր խորհուրդը, որը միավորում է ավելի քան 3 միլիոն աշխատավորներ) ճապոնական պրոլետարիատին կոչ արեց համախմբել իր շարքերը պայքարելու հանուն աշխատավորների կենսական պահանջների։ Կոնֆերանսը կառավարությունից պահանջեց ռազմական ծախսերի կրճատման հաշվին ավելացնել սոցիալական կարիքների համար կատարվող ծախսերը, ինչպես նաև միջոցներ ձեռնարկել գործազրկությունը վերացնելու համար։

Աշխատավարձի բարձրացման համար ծավալված շարժումը մասսայական բնույթ է ստացել Արևմտյան Գերմանիայում։ Ամենահամեստ հաշվարկումների համաձայն, այդ շարժումը այժմ ընդգրկել է հինգ միլիոն մարդ։ Դրա մեջ առաջատար դեր է խա-





ղում մետաղագործների արհմիությունը, որն իր շարքերում միավորում է 1 միլիոն 600 հազար անդամ, իսկ ձեռնարկատերերի հետ կայացող բանակցությունների ժամանակ ներկայացնում է մոտ 3 միլիոն մարդ։ Մետաղագործների հետ համատեղ աշխատավարձի բարձրացում են պահանջում Հյուսիսային Հռենոս—Վեստֆալիա երկրամասի հարյուր հազարավոր երկաթուղայիններ, դերձակներ, տեքստիլագործներ, քիմիագործներ, ինչպես նաև աշխատավորության այլ ջոկատներ։

Կապիտալիզմի պատմությունը ոչ մի օրինակ չգիտե, երբ ձեռնարկատերերը հոժարակամ համաձայնվեին բավարարել աշխատավորների պահանջները։ Բավարարել դրանք՝ կապիտալիստի համար նշանակում է հրաժարվել իր շահույթների մի ինչ-որ մասից, ավելացնել արտադրության ծախքերը, թուլացնել իր մրցելու ունակությունը։

Այսպիսով, համաձայնությունն անհնարին է։ Մնում է պայքարը, համառ գործադուլային պայքարը, որը գնալով է՛լ ավելի է բորբոքվում։

---

## СОДЕРЖАНИЕ




Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ